# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ





ՍԵՊՏԵՄԲԵՐ

**18**

1964

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Մեթոդական օգնություն ագիտատորներին



Ագիտացիոն աշխատանքի փորձից



Օգտագործիր զրույցի ժամանակ



Եղբայրական սոցիալիստական երկրներում



Կապիտալի երկրներում



Օգնություն ագիտատորներին



Ագիտատորի տեղեկատու



## СОДЕРЖАНИЕ

Стр.

**Методическая помощь агитаторам**



**Из опыта агитационной работы**



**Используй во время бесед**



**В братских социалистических странах**



**В странах капитала**



**В помощь агитаторам**



**Справочник агитатора**




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 18
ՍԵՊՏԵՄԲԵՐ
1964

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԲՈԼՈՐ ՏԵՍԱԿՆԵՐԸ ԱՌԱՆՑ ՎՆԱՍԻ ԹՈՂԱՐԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Այս թեմայով զրույց անցկացնելիս ագիտատորն ունկնդիրներին սկզբում պետք է պարզաբանի, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար մղվող համաժողովրդական պայքարում կարևոր նշանակություն ունի արտադրության ծախքերի հետևողական իջեցումը և այդ հիման վրա յուրաքանչյուր ձեռնարկության շահութաբերության բարձրացումը։ Իսկ դա, իր հերթին, պահանջում է խորապես իմանալ ու հմտորեն ղեկավարել արտադրությունը, ստեղծագործորեն հայտաբերել ու գործի դնել չօգտագործված բոլոր ներքին ռեզերվները։*

*Խոսելով սոցիալիստական տնտեսավարության ձևերի կատարելագործման անհրաժեշտության մասին, ընկեր Խրուշչովը վիթխարի նշանակություն է տալիս այն բանին, թե «Ինչպես է աշխատում ձեռնարկությունը՝ վնասո՞վ, թե՞ շահույթ է տալիս, շռայլում է հանրային միջոցները, թե՞ բազմապատկում է դրանք», քանի որ «Առանց շահույթը հաշվի առնելու անհնարին է որոշել, թե ինչ մակարդակով է վարվում ձեռնարկության տնտեսությունը և նա ինչ ավանդ է ներդնում ժողովրդական ֆոնդում»։*

*Զրույցի այս մասում ունկնդիրներին անհրաժեշտ է պատմել, որ մեր արդյունաբերության աշխատողները, կենսագործելով ՍՄԿԿ XXII համագումարի առաջադրած՝ կոմունիզմի տնտեսական շինարարության*

մեծ խնդիրները, զգալի հաջողություններ են ձեռք բերել նաև արտադրության տնտեսական արդյունավետությունը բարձրացնելու ուղղությամբ։ Բավական է ասել, որ միայն այս տարվա առաջին կիսամյակում, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, երկրի արդյունաբերության մեջ շահութաբերությունն աճել է տասը տոկոսով։ Շատ ձեռնարկությունների կոլեկտիվներ հարուստ փորձ են կուտակել արտադրության բոլոր օղակներում առանց վնասի աշխատելու ուղղությամբ։ Մեծ ուշադրություն է դարձվում առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրմանը, հումքի, օժանդակ նյութերի, էլեկտրաէներգիայի, դրամական միջոցների խնայողաբար օգտագործմանը։

Որպեսզի զրույցը լինի ավելի նպատակասլաց, ագիտատորը հանգամանորեն պետք է պատմի մոսկվացիների փորձի մասին, որոնք օրերս հանդես եկան հայրենասիրական մի նոր նախաձեռնությամբ։ Նրանք իրենց առջև խնդիր դրեցին 1964—1966 թվականների ընթացքում առանց վնասի թողարկել արտադրանքի յուրաքանչյուր տեսակը և անընդհատ բարձրացնել արտադրանքի որակը։ Այդ նպատակին հասնելու համար մշակված են առաջադիմական նոր տեխնոլոգիայի, հանգույցների ու մասերի առավել կատարյալ կոնստրուկցիաների արմատավորման, պլաստմասսաների լայն կիրառման, նյութական ռեսուրսների ու դրամական միջոցների խնայողաբար ծախսման, արտադրության կազմակերպումը բարելավելու միջոցառումներ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հավանություն տվեց մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությանը և հատուկ որոշում ընդունեց այդ մասին։ Պարտիայի Կենտրոնական կոմիտեն վստահություն հայտնեց, որ այդ հայրենասիրական շարժումը «կդառնա յուրաքանչյուր պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպության, յուրաքանչյուր բանվորի, ինժեների, տեխնիկի, տնտեսագետի, տեխնոլոգի, կոնստրուկտորի ու գիտական աշխատողի ամենօրյա գործը»։

Այնուհետև ագիտատորը լավ կլինի ունկնդիրներին պատմի այն մասին, թե ինչպես մոսկվացիներին ջերմորեն արձագանքեցին նաև Սովետական Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Ի դեպ, ուշագրավն այն է, որ մեզ մոտ նոր շարժման առաջին արձագանքողները եղան այն ձեռնարկու-







թյունների կոլեկտիվները, որոնք աշխատում են շահութաբեր և ամեն տարի պետության եկամուտների հաշվին փոխանցում են մեծ գումարների հասնող օգուտներ։ Խոսքը Երևանի Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի և Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանների մասին է։ Այդ նրանք են, որոնց նախաձեռնությամբ դեռ տարեսկզբից ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ ծավալված խնայողության և տնտեսման շարժումը արդեն իր արգասաբեր արդյունքն է տալիս։ Այդ նրանք են, որոնք թեև ապահովել են իրենց ձեռնարկությունների և ձեռնարկությունների ներսում յուրաքանչյուր արտադրատեսակի շահութաբերությունը, սակայն հայրենիքի հանդեպ ունեցած պարտքի բարձր զգացումով ձգտում են միշտ առաջ ընթանալ, ռեզերվներ փնտրել նույնիսկ այնտեղ, որտեղ առաջին հայացքից թվում է, թե այլևս փնտրելու բան չկա, և ամեն ինչ սպառված է։ Այսպես. կիրովցիները, որ այս տարվա անցած ամիսներին տնտեսել են ավելի քան մեկ միլիոն 700 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 730 տոննա վառելիք, չբավարարվելով ձեռք բերածով, օգոստոսի 19-ին պատվիրակություն ուղարկեցին Մոսկվա՝ նոր շարժման նախերգիչ ձեռնարկություններից մեկի՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր «Կաուչուկ» գործարանի կոլեկտիվի հետ ունեցած սոցիալիստական մրցության պարտավորությունները վերանայելու։

Էլեկտրամեքենաշինարարները, որոնք արտադրական պրոցեսների ավտոմատացման միջոցով նշանակալի հաջողությունների են հասել աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում, ի պատասխան մոսկվացիների, ավելի են խորամուխ լինում արտադրության էկոնոմիկայի հարցերում։ Ուրախությամբ պետք է նշել, որ էկոնոմիկայի հարցերն այստեղ այլևս հեռու են մասնագետների մենաշնորհ լինելուց և հանդիսանում են կոլեկտիվի մշտական հոգացողության առարկան։ Գործարանում հիմնվել է հասարակական հիմունքներով աշխատող տնտեսագիտական վերլուծությունների բյուրո, որը միավորում է 220 ակտիվիստների։ Դրանք ինժեներներ են, կոնստրուկտորներ, տեխնոլոգներ, բանվորներ, տնտեսագետներ, նորարարներ, որոնք զբաղվում են հումքի, սարքավորումների, բանվորական ժամանակի

ռացիոնալ օգտագործման հարցերի հետազոտմամբ և արժեքավոր առաջարկություններ են անում: Նրանք վերցրել են նորարարական առաջարկների ներդրումը կազմակերպելու շեֆությունը:

Անհրաժեշտ է զրույցի ընթացքում օգտագործել տեղական փաստեր, պատմել ունկնդիրներին, թե իրենց մոտ ինչ է արվում հումքը խնայողաբար օգտագործելու, մեկ միավորից ավելի շատ մանվածք ու գործվածք ըստանալու, արտադրանքի որակը բարձրացնելու և ինքնարժեքն իջեցնելու ուղղությամբ, ունկնդիրներից ով ինչ հաջողությունների է հասել այդ գործում:

Ի՞նչ միջոցներով և ի՞նչ ուղղություններով հասնել առանց վնասի արտադրության: Այս հարցի պարզաբանման վրա ագիտատորը պետք է հատուկ ուշադրություն դարձնի:

Անհրաժեշտ է անընդհատ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը, բարելավել արտադրանքի որակը, արդյունավետ օգտագործել հումքն ու օժանդակ նյութերը, ներքին ռեզերվները: Հարկավոր է հասնել այն բանին, որպեսզի թողարկվող ամբողջ արտադրանքը լինի անթերի, քանի որ վնասաբերությունը գերազանցապես առաջանում է խոտանից:

Պրակտիկան ցույց է տալիս, որ մի շարք ապրանքների բարձր ինքնարժեքը կապված է աշխատանքի մեծ ծախսումների հետ: Շատ դեպքերում այդպիսի ապրանքների արտադրման նորմաները սահմանում են վարպետը կամ նորմավորողը՝ առանց որևէ տեխնիկական հաշվարկումների: Հետևաբար, տեխնիկական նորմավորման կարգավորումը արտադրանքի էժանացման կարևոր պայմաններից մեկն է: Միայն թե անհրաժեշտ է հիշել, որ այդ ուղղությամբ կատարվող տնտեսական, տեխնիկական և կազմակերպական բոլոր միջոցառումներն արդյուն կանցնեն, եթե հոգ չտարվի բանվորների որակավորման, նրանց գիտելիքների հարստացման մասին:

Հայրենասիրական նոր շարժման հաջողությունը մեծապես կախված է կազմակերպական, քաղաքական-մասսայական աշխատանքի մակարդակից: Արդյունաբերության բոլոր աշխատողներին, բոլոր բանվորներին ներգրավել շահութաբեր աշխատանքի համար ծավալվող սոցիալիստական մրցության մեջ, նրանց բացատրել այդ շարժման պետական վիթխարի նշանակությունը՝ ահա մեր ագիտատորների պարտքը:

ԱՐՇ. ՍԻՄՈՆՅԱՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԸ ԶԲՈՍԱՅԳՈՒՄ

Ագիտատոր Վ. Մկրտչյանը իր ունկնդիրների հետ ագիտացիոն զրույցներ է ունենում ոչ միայն ձեռնարկությունում, Սևանի ապակեէլեկտրամեկուսիչների գործարանում, որտեղ աշխատում է ինքը, այլև քաղաքի զբոսայգում: Նրան հաճախակի աշխատանքից հետո կամ կիրակի օրերին կարելի է տեսնել զբոսայգում շըրջապատված երիտասարդներով, մոտակա շենքերի մի շարք բնակիչներով, որոնք գոհունակությամբ լսում են ագիտատորին և աշխույժ մտքերի փոխանակություն ունենում նրա հետ:

Կատարելով ունկնդիրների ցանկությունը, ագիտատոր Վ. Մկրտչյանը վերջերս զբոսայգում զրույց ունեցավ ունկնդիրների հետ իրենց զարգացող քաղաքի մասին:

— Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական նոր կենտրոններից մեկն է Սևանը,— ասաց նա: Եթե 25 տարի առաջ Սևանում չկար ոչ մի ձեռնարկություն, շարունակում է ագիտատորը, ապա ներկայումս նրա թողարկած արտադրանքը լայն ճանաչում է գտել ՍՍՌՄ-ում և արտասահմանյան շատ երկրներում: Նա մանրամասնորեն պատմում է գործադիր սարքերի գործարանի մասին, որը վաղուց չէ, ինչ սկսել է արտադրանք տալ: Յոթնամյակի այդ կառույցը Հայաստանի սարքաշինության խոշոր ձեռնարկություններից է: Այն արտադրում է հազվագյուտ ու բարձրարժեք սարքեր որոնք լայն կիրառություն են գտել ոչ միայն Սովետական Միությունում, այլև Լեհաստանի մետալուրգիական ձեռնարկություններում: Հեռու չէ այն ժամանակը, երբ Սևանի մարկան կրող գործադիր սարքերը կունենան նոր հասցե, կգործեն հեռավոր Հնդկաստանի Բհիլայի մետալուրգիական կոմբինատում:

Երիտասարդ գործարանը հագեցվել է նորագույն տեխնիկայով, աճել է տեխնիկական ինտելիգենցիան, յուրաքանչյուր 100 բանվորից 55-ը ունեն միջնակարգ կրթություն, շատերը հեռակա կարգով ձեռք են բերում բարձրագույն կրթություն: Արդեն կոմունիստական կոչման են արժանացել մեկ արտադրամաս և չորս բրիգադ:

Գործարանում շատ են պրպտող մարդիկ: Նրանք

իրենց ստեղծագործական միտքն ու աշխատանքը ծառայեցնում են ձեռնարկության առաջընթացին, նպաստում նրա տեխնիկական առաջադիմությանը։ Միայն անցած յոթ ամսում գործարանում կիրառվել է ռացիոնալիզատորական ու նորարարական 50-ից ավելի առաջարկություն, որը տարեկան տալիս է շուրջ 100 հազար ռուբլու օգուտ։

Սարքաշինարարները նորի, առաջավորի ջերմ պաշտպաններ են։ Վերջերս նրանք օրինակելի նախաձեռնություն հանդես բերեցին՝ արձագանքելով Մոսկվայի 15 արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների կոչին։ Հետևելով մոսկվացիների հայրենասիրական նախաձեռնությանը, գործարանի աշխատողները նույնպես պայքար են ծավալել յուրաքանչյուր արտադրանք թողարկելու առանց վնասի։ Այստեղ արտադրանքի բոլոր տեսակները շահութաբեր են։ Բայց նրանք նոր միջոցներ են մշակում արտադրանքի մի քանի այլ տեսակների տեխնոլոգիան կատարելագործելու միջոցով արտադրելու ավելի ցածր ինքնարժեքով գործադիր սարքեր։

Այնուհետև ագիտատորը պատմում է գործարանի ապագայի մասին։

— Բայց ավելի հիասքանչ է գործարանի վաղվա օրը, ոգևորիչ են զարգացման հեռանկարները,— շարունակում է նա։ Արդեն բարձրանում են ձեռնարկության նոր կորպուսները, որոնք կհագեցվեն ժամանակակից տեխնիկայով։ Այդ հնարավորություն կտա եռապատկել ձեռնարկության արտադրական կարողությունը։

Ագիտատոր Վ. Մկրտչյանն այնուհետև պատմում է այն նոր գործարանների մասին, որոնք շարք են մտել վերջին մի քանի տարիների ընթացքում։

Լճի ափին կառուցված է ձկնաբուծական գործարանը։ Գիտնականների ստեղծարար աշխատանքի շնորհիվ այժմ «Իշխան» ձկան բազմացման մենաշնորհը մարդիկ վերցրել են իրենց ձեռքը, որը դարեր շարունակ կախված էր բնության քմահաճույքից։ Երիտասարդ ձեռնարկությունը տարեկան բազմացնում ու Սևանի լիճն է բաց թողնում «Իշխանի» ավելի քան չորս միլիոն ձկնիկներ։

Բնական շինանյութերի անսպառ պաշար ունի Հայաստանը։ Նրա ընդերքը հարուստ է բազմաթիվ քարատեսակներով։ Այժմ գիտությունը, աշխատավորների ստեղծագործական մտքով ու ջանքերով քարը ծառա-



յեցնում է ժողովրդին, քարը դառնում է հարստություն։

Սևան քաղաքում, ասում է ագիտատորը, լճի գեղատեսիլ ափին հասակ է առնում մի խոշոր գործարան, որը լինելու է Սովետական Միության քիմիական արդյունաբերության հսկա ձեռնարկություններից մեկը։ Դա ապակե էլեկտրամեկուսիչների գործարանն է, որտեղ քարը, հնազանդվելով մարդու կամքին, դառնում է ապակեթել։

Թեև ձեռնարկության շինարարական հրապարակներում արագ թափով շարունակվում է նոր կորպուսների կառուցումը, սակայն առանձին արտադրամասեր արդեն արտադրանք են տալիս, երկիրն ստանում է արժեքավոր քիմիական նյութեր, որոնց դերը կարևոր նշանակություն ունի ժողովրդական տնտեսության շատ ճյուղերի զարգացման համար։ Յոթնամյակի այդ խոշոր կառույցը հագեցվել է հայրենական նորագույն տեխնիկայով։

Գործվածքեղենի արտադրամասում ներկայումս գործում են 36 հաստոցներ, որոնք ապակեթելերից հյուսում են գործվածք։ Վերջինս իր հատկություններով չի զիջում բամբակին, մետաքսե գործվածքներին։ Ապակեթելի գործվածքը շատ ամուր է, թեթև ու դիմացկուն։ Այն միաժամանակ, թթվակայուն է, ջերմադիմացկուն, լույսի ու զանազան նյութերի ազդեցությունից բոլորովին չի քայքայվում։ Ահա թե ինչու ապակեգործվածքը լայն կիրառություն է գտել շինարարական, էլեկտրատեխնիկական, քիմիական և մեքենաշինական արդյունաբերության մեջ։

Ձեռնարկության կոլեկտիվը Սովետական Միությունում առաջին անգամ յուրացրել ու թողարկում է արտադրանքի մի տեսակ ևս։ Դա ապակեթուղթն է, որը լրագրի սովորական թղթից չորս անգամ բարակ է և հիանալի մեկուսիչ է։ Անչափ մեծ է ապակեթելի դերը ժողովրդական տնտեսության մեջ, որի օգտագործումով հնարավորություն է ընձեռվում զգալի չափով կրճատել շարժիչների քաշը, ավելացնել դրանց օգտագործման գործակիցը։ Այդ նոր արտադրանքը կիրառվում է նաև բժշկության մեջ։

— Բայց մեծ քիմիայի այդ խոշոր գործարանի արտադրանքը,— ասում է ագիտատորը,— միայն դրանով չի սպառվում։ Արագ թափով առաջ է տարվում նաև ապակեգնդիկների ու բովախառնուրդի բաժանմունքների սարքավորումների մոնտաժումը։ Տեղադրվել են եր-

կու հսկայական վառարաններ, որոնցից յուրաքանչյուրը մեկ հերթափոխում կթողարկի մի քանի տոննա ապակեգնդիկ։ Ուշագրավ է և այն,-որ բաժանմունքն աշխատելու է տեղական հումքի բազայի վրա, օգտագործվելու են Հայաստանի տուֆը, բազալտը, կավն ու ավազը։

Մինչև այժմ գործարանր հումքն ստանում էր Խարկովի համանման ձեռնարկությունից, բայց մի քանի ամիս հետո, երբ շահագործման կհանձնվեն նոր բաժանմունքները, այլևս հարկ չի լինի «անհանգստացնել» խարկովցիներին։

Աշխատանքային եռուզեռ է տիրում գործարանի ապակեարտադրամասերի նոր կորպուսներում։ Շինարարները ջանում են, որպեսզի օր առաջ ավարտեն կառույցը, որպեսզի ձեռնարկությունը լրիվ կարողությամբ շարք մտնի յոթնամյակի վերջին տարում՝ 1965 թվականին։

... Քարը դառնում է հարստության աղբյուր, Հայաստանի քարը, այժմ լիովին հնազանդվելով մարդու կամքին, վերածվում է քիմիական նյութերի, դառնում մետաքսի թելի նման փայլուն։ Եվ շուտով, շատ շուտով «Սևան» մարկան կրող ապակեթելերը, բազմապիսի ապակե գործվածքները, ապակե պլաստիկը կուղարկվեն հազարավոր հասցեներով, կունենան միլիոնավոր սպառողներ։

Գեղեցիկ է լինելու Սևանի վաղը, եզրափակում է իր զրույցը ագիտատորը, ավելի բուռն վերելք է ապրելու լճափնյա այս գեղեցիկ քաղաքը, որտեղ կկառուցվեն արտադրական նոր օբյեկտներ, բազմահարկ բնակելի շենքեր։

Շուտով այստեղ կծնվի մեծ քիմիայի մի նոր խոշոր ձեռնարկություն՝ արհեստական մետաքսաթելերի կոմբինատը։ Չի անցնի մեկ տարի, և բարձրավոլտ էլեկտրահաղորդման լարերով կհոսի նորակառույց ջերմաէլեկտրակայանի էլեկտրական առաջին հոսանքը։

... Ագիտատորի զրույցն ավարտվում է։ Մարդիկ վառ տպավորություններով հրաժեշտ են տալիս միմյանց, խանդավառված Սևանի այսօրվա և վաղվա գեղեցիկ հեռանկարներով։

ՀՐ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԱՌԱՋԻՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

(Թվեր և փաստեր)

Ապրում և հաղթանակում են Առաջին ինտերնացիոնալի գաղափարները: Նրա սկսած գործը հաստատակամորեն առաջ են տանում Սովետական Միության կոմունիստական պարտիան, եղբայրական սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները, բոլոր կոմունիստական պարտիաները, աշխարհի առաջադեմ մարդկությունը:

Փայլուն կերպով իրականացել են մեծ Լենինի մարգարեական կանխատեսումները Առաջին ինտերնացիոնալի մասին, որ նա անմոռանալի է, որ նա հավիտենական է բանվորների՝ իրենց ազատագրության համար մղած պայքարի պատմության մեջ:

Այժմ ամբողջ աշխարհում հաղթանակում են սոցիալիզմի գաղափարները՝ մարդկությունը պայքարում է վերջնականապես ազատագրվելու կապիտալիստական շահագործումից, սոցիալական և ազգային ճնշումից: Համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսն ավելի ու ավելի ծավալվում և խորանում է:

ԱՐԴԵՆ մարդկության ավելի քան մեկ երրորդը ազատագրվել է շահագործումից և սոցիալական ճնշումից։ Մոտ երկու միլիարդ մարդ ազատագրվել են գաղութակալական ստրկությունից։

ՆԵՐԿԱՅՈՒՄՍ կոմունիստական պարտիաներ կան աշխարհի 90 երկրներում, որոնցում միավորվում են ավելի քան 42 միլիոն կոմունիստներ։ Նրանք իրենց հետևից տանում են տասնյակ միլիոն աշխատավորների։

ԵԹԵ 1919 թվականին սոցիալիստական աշխարհն իր տարածությամբ բռնում էր երկրագնդի 16 տոկոսը, իսկ բնակչությունը կազմում էր 17,8 տոկոս, ապա այժմ նա իր տերիտորիայով գրավում է երկրագնդի 26 տոկոսը, որտեղ բնակվում է ամբողջ մարդկության 35,6 տոկոսը։

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ սոցիալիստական սիստեմը ցույց է տալիս իր գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ նաև այնպիսի կարևոր բնագավառում, ինչպիսին է նյութական բարիքների արտադրությունը։

ԵԹԵ 1955 թվականին սոցիալիստական երկրների բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ կազմում էր 27 տոկոս, ապա ներկայումս այն հասնում է 40 տոկոսի։

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ արդյունաբերական արտադրության մեջ սոցիալիստական երկրների բաժինը 1917 թվականին եղել է 3 տոկոս, 1937 թվականին՝ 10, իսկ 1963 թվականին՝ 38 տոկոս։

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ երկրներում 1937—1963 թվականներին արդյունաբերությունն աճել է 8 անգամ, իսկ կապիտալիստական երկրներում՝ 2.9 անգամ։

ԳՆԱԼՈՎ անընդհատ ավելանում է սոցիալիզմի երկրների ազգային եկամուտը։ 1962 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում ազգային եկամուտը կազմել է 303 տոկոս, Հունգարիայում՝ 209, ԳԴՌ-ում՝ 262, Լեհաստանում՝ 230, Ռումինիայում՝ 316 տոկոս։ 1961 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ազգային եկամուտը Բուլղարիայում կազմել է 290 տոկոս, իսկ Չեխոսլովակիայում՝ 222 տոկոս։

ԵԹԵ ՍՍՌՄ-ում 1962 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ազգային եկամուտը կազմել է 303 տոկոս, ապա ԱՄՆ-ում այդ նույն ժամանակամիջոցում կազմել է 145 տոկոս, Անգլիայում՝ 149, Ֆրանսիայում՝ 168, ԳՖՌ-ում՝ 251 տոկոս։

ՀԱԶԱՐ մարդու հաշվով 1962 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում կառուցվել է 5 բնակարան, ԳԴՌ-ում՝ 3,3, Հունգարիայում՝ 2,6, Լեհաստանում՝ 2, Չեխոսլովակիայում՝ 3,1։

ՆՈՒՅՆ ժամանակամիջոցում հազար մարդու հաշվով ԱՄՆ-ում կառուցվել է մեկ բնակարան, Անգլիայում և ԳՖՌ-ում կեսական բնակարան։

ԲԱՆՎՈՐԱԿԱՆ շաբաթվա տևողությունը ՍՍՌՄ-ում 39,4 ժամ է, ԱՄՆ-ում՝ 40,4, ԳՖՌ-ում՝ 45,5, Ֆրանսիայում՝ 45,9, Անգլիայում՝ 47,4 և Ճապոնիայում՝ 51,3 ժամ։

ԵԹԵ կապիտալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում, Անգլիայում, Ճապոնիայում բանվոր դասակարգը տառապում է գործազրկությունից, ապա սոցիալիզմի երկրներում այն բոլորովին գոյություն չունի։

ԴԵՌԵՎՍ 1962 թվականի տվյալներով, նախառևոլյուցիոն շրջանի համեմատությամբ, մեր երկրում բանվոր-ծառայողների թիվն ավելացել է 5,3 անգամ, ազգային եկամուտը ավելացել է 26 անգամ, բանվորների ռեալ եկամուտը՝ 5,9, գյուղացիների եկամուտը՝ ավելի քան 7 անգամ։

ՆՈՒՅՆ ժամանակամիջոցում քաղաքներում բնակելի ֆոնդը ավելացել է 6 անգամ, միջնակարգ և բարձրագույն կրթությամբ մասնագետների թիվը՝ 52 անգամ, նախադպրոցական հիմնարկներում երեխաների թիվը՝ 1.243 անգամ, բժիշկների թիվը՝ (առանց ատամնաբույժների) 19 անգամ, երեխաների մահացությունը պակասել է 8,5 անգամ։



ԱՄԲՈՂՋ աշխարհում բանվոր դասակարգը հզոր ուժ է դարձել։ Եթե կապիտալիստական զարգացած երկրներում (Անգլիա, ԱՄՆ, Ֆրանսիա, Գերմանիա) 19-րդ դարի կեսերին բանվորների թիվը կազմում էր 9 միլիոն, իսկ 20-րդ դարի սկզբներին՝ մոտ 30 միլիոն մարդ, ապա այժմ այդ երկրներում հաշվվում է մոտ 60 միլիոն բանվոր։

ՎԵՐՋԻՆ 10 տարվա ընթացքում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի զարգացող երկրներում բանվորների թիվը ավելացել է 40 միլիոնով։

ԱՆԸՆԴՀԱՏ ավելանում է գործադուլների և նրանց մասնակիցների թիվը։ Եթե 1919—1939 թթ. եղել է 177,4 հազար գործադուլ՝ 80,8 միլիոն մարդու մասնակցությամբ, ապա 1946—1963 թթ. եղել է 247,4 հազար գործադուլ՝ 222,6 միլիոն մարդու մասնակցությամբ։

ԵԹԵ մինչպատերազմյան տարիներին ԱՄՆ-ում ամեն տարի միջին հաշվով կատարվում էր 1.965 գործադուլ, որին մասնակցում էին 832 հազար մարդ, ապա 1946—1957 թթ. տարեկան միջին հաշվով եղել է 4.225 գործադուլ, որին մասնակցել են 2.483 հազար բանվոր։

ԷԼ ԱՎԵԼԻ է մեծանում քաղաքական գործադուլների մասնակիցների թիվը։ Այսպես, օրինակ, 1958 թվականին գործադուլին մասնակցած 25—27 միլիոն մարդուց քաղաքական գործադուլներին մասնակցել են 11—12 միլիոն մարդ, 1959 թվականին՝ 35—37 միլիոն մարդուց՝ 16—18 միլիոնը, 1960 թվականին՝ 54—58 միլիոն մարդուց՝ 41—45 միլիոնը, 1961 թվականին՝ 50—53 միլիոն մարդուց՝ 30—33 միլիոնը, 1962 թվականին՝ 56—62 միլիոն մարդուց՝ 35—40 միլիոնը։

ԵԹԵ 1913 թվականին ամբողջ աշխարհում կար արհմիության 15 միլիոն անդամ, ապա այժմ արհմիությունները միավորում են ավելի քան 200 միլիոն մարդ՝ համաշխարհային բանվոր դասակարգի 40 տոկոսը։

**1847** թվականին Մարքսն ու Էնգելսը ստեղծեցին Կոմունիստների միությունը, որը մասսայական կազմակերպություն չէր և իր մեջ ընդգրկում էր ընդամենը 400 մարդ, այնինչ այժմ աշխարհում կան ավելի քան 42 միլիոն կոմունիստներ։

ԱՌԱՋԻՆ միջազգային պրոլետարական պարտիան հանդիսանում է I Ինտերնացիոնալը, որի շարքերում հաշվվում էին տասնյակ հազարավոր բանվորներ։ Նրա սեկցիաները գործում էին Եվրոպայի և Ամերիկայի բազմաթիվ երկրներում։

ԱՅԺՄ բուռն թափով աճում է կոմունիստական շարժումը։ Աշխարհում 1928 թվականին կար 46 կոմպարտիա 1.680 հազար անդամով, 1935 թվականին՝ 64 կոմպարտիա 3.141 հազար անդամով, 1957 թվականին՝ 75 կոմպարտիա 33 միլիոն անդամով, 1960 թվականին՝ 87 կոմպարտիա, ավելի քան 36 միլիոն անդամով, 1963 թվականին՝ 90 կոմպարտիա, ավելի քան 42 միլիոն անդամով։

ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ 28 նոր պարտիաներից, որոնք ստեղծվել են վերջին 25 տարիներին, 26-ը ստեղծվել են նոր զարգացող երկրներում։ Դրանցից Ասիայի ոչ սոցիալիստական երկրներում՝ 11 կոմպարտիա, Լատինական Ամերիկայում՝ 9 և Աֆրիկայում՝ 6 կոմպարտիա։

ՈՉ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ երկրներում (ըստ աշխարհամասերի) կոմունիստների թիվը ավելացել է հետևյալ կերպ. Եվրոպայում՝ 1939 թվականին՝ մոտ 500 հազար, 1957 թվականին՝ ավելի քան 2,5 միլիոն, 1963 թվականին՝ 3 միլիոնից ավելի. Ասիայում՝ 1939 թվականին՝ ավելի քան 20 հազար, 1957 թվականին՝ ավելի քան 1,7 միլիոն, 1963 թվականին՝ 2,5 միլիոնից ավելի. Ամերիկայում՝ 1939 թվականին՝ մոտ 180 հազար, 1957 թվականին՝ 215 հազար, 1963 թվականին՝ 250 հազարից ավելի. Աֆրիկայում 1939 թվականին՝ մոտ 5 հազար, 1957 թվականին՝ 20 հազարից ավելի, 1963 թվականին՝ 50 հազարից ավելի. Ավստրալիայում և Օվկիանիայում՝ 1939 թվականին՝ մոտ 5 հազար, 1957 թվականին՝ 6,5 հազար, 1963 թվականին՝ ավելի քան 7,5 հազար։

ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ խոշոր երկրներում կոմպարտիաները պառլամենտական ընտրությունների ժամանակ ստացել են հետևյալ ձայները. Իտալիա՝ 1958 թվականին՝ 6,7 միլիոն ձայն (22,7 տոկոս), 1963 թվականին՝ 7,8 միլիոն (25,3 տոկոս), Հնդկաստան՝ 1957 թվականին՝ 12 միլիոն (10,5 տոկոս), 1962 թվականին՝ 11,5 միլիոն (10,1 տոկոս), Ֆրանսիա՝ 1958 թվականին՝ 3,9 միլիոն (18,9 տոկոս), 1962 թվականին՝ 4 միլիոն (21,9 տոկոս)։

ԱՎԵԼԻ քան 35 միլիոն մարդ քվեարկում է կոմունիստների օգտին այն կապիտալիստական երկրներում, ուր կոմպարտիաները գործում են լեգալ կերպով և մասնակցում են ընտրություններին։

ՄՈՏԱՎՈՐԱՊԵՍ աշխարհի 40 կապիտալիստական երկրներում կոմպարտիաները օրենքից դուրս են հայտարարված և ստիպված գործում են անլեգալ։

ԱՌԱՋԻՆ ինտերնացիոնալը առաջ քաշեց ազգային ճնշման դեմ պրոլետարիատի պայքարի խնդիրը։ Սոցիալիստական երկրների օգնությամբ ճնշված ժողովուրդները խորտակել են իմպերիալիզմի գաղութային սիստեմը։

ԵԹԵ 1919 թվականին գաղութների և կիսագաղութների տերիտորիան կազմում էր 104,5 միլիոն քառ. կմ կամ երկրագնդի 77,2 տոկոսը, իսկ բնակչությունը՝ 1.230 միլիոն մարդ, կամ երկրագնդի բնակչության 69,2 տոկոսը, ապա 1964 թվականի սկզբներին գաղութների և կիսագաղութների տերիտորիան կազմում է 6,9 միլիոն քառ. կմ կամ երկրագնդի 5,2 տոկոսը, իսկ բնակչությունը՝ 40,2 միլիոն մարդ կամ երկրագնդի բնակչության 1,3 տոկոսը։



ԳԱՂՈՒԹԱԿԱԼՈՒԹՅԱՆ խայտառակ ռեժիմը նախկին գաղութներում թողել է սարսափելի հետևանքներ։ Եթե մեկ մարդու տարեկան եկամուտը նոր զարգացող երկրներում կազմում է 60 դոլար, ապա զարգացած երկրներում այն կազմում է 800 դոլար։

ՆՈՐ զարգացող երկրներում ամբողջ բնակչության 13,5 տոկոսն է գրագետ, իսկ զարգացած երկրներում՝ բնակչության 98,5 տոկոսը։

100 ՀԱԶԱՐ մարդու հաշվով նոր զարգացող երկրներում բժիշկների թիվը կազմում է 8, իսկ զարգացած երկրներում՝ 102։

ԿՅԱՆՔԻ միջին տևողությունը նոր զարգացող երկրներում 35 տարի է, իսկ զարգացած երկրներում՝ 65 տարի։

ԱՐԴԵՆ 1962 թվականին նախկին գաղութների ու կիսագաղութների տեղում ստեղծված ինքնուրույն պետությունների տերիտորիան կազմում էր 73,6 միլիոն քառ. կմ կամ երկրագնդի 55,2 տոկոսը, իսկ բնակչությունը՝ 1.891,4 միլիոն մարդ կամ երկրագնդի բնակչության 59,4 տոկոսը։

ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ժամանակաշրջանում ստեղծված 52 պետություններից 37-ը անկախություն են ստացել կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ էտապում։ Միայն 1960 թվականին անկախություն ստացան 17 աֆրիկյան պետություններ։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ երկրների անշահախնդիր օգնությամբ նոր զարգացող պետություններում կառուցվում են մոտ 900 արդյունաբերական ձեռնարկություններ։ Միայն ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցվում է 480 ձեռնարկություն։

ՄԵՐ երկիրը տնտեսական և տեխնիկական օգնություն է ցույց տալիս Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի 23 երկրների։

ՄԻԱՅՆ ՍՍՌՄ-ում սովորում են ազատագրված երկրների ավելի քան 12 հազար ուսանողներ։

Կենսագործելով Մարքսի, Էնգելսի, Լենինի պատգամները, Սովետական Միության կոմունիստական պարտիան, բոլոր եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաներն անխոնջ կերպով պայքարում են կոմունիստական շարժման միասնության համար, կոմունիզմի համաշխարհային հաղթանակի համար:

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Ընդամենը 15 տարվա պատմություն ունի Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան: Այդ կարճ ժամանակամիջոցում երկրում տեղի են ունեցել վիթխարի փոփոխություններ: Ռեսպուբլիկայում վերջնականապես և լրիվ հաղթանակել են սոցիալիստական արտադրական հարաբերությունները, լուծված է գյուղատնտեսության կոոպերացման հարցը: Մեծ հաջողությամբ երկրում կենսագործվում են Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիայի որոշումները, ծաղկում և բարգավաճում է ԳԴՌ-ն: Ահա տեղեկություններ այդ մասին:

*★ Ներկայումս ԳԴՌ-ն աշխարհի ամենազարգացած արդյունաբերական տերությունններից մեկն է։*

*★ Այս տարի արդյունաբերական արտադրանքի ծավալով ԳԴՌ-ն հասավ 1936 թվականի ամբողջ Գերմանիայի համապատասխան արտադրանքի ծավալին, չնայած այն հանգամանքին, որ նրա տերիտորիան կազմում է այն ժամանակվա Գերմանիայի մեկ չորրորդ մասը։*

*★ Արդյունաբերական արտադրանքի թողարկման աճը 13 տարվա ընթացքում (1950—1963) ԳԴՌ-ում կազմել է 347 տոկոս, իսկ Արևմտյան Գերմանիայում՝ 287։*

*★ Միայն անցյալ տարի ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 6,5 տոկոսով։*

*★ Նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի ձեռնարկությունները թողարկել են 100 միլիարդ մարկ արժողությամբ արդյունաբերական արտադրանք։*

*★ Ռեսպուբլիկայում ներկայումս, 1945 թվականի համեմատությամբ, 6 անգամ ավելացել է քիմիական նյութերի, 9 անգամ էլեկտրատեխնիկական սարքերի արտադրությունը։*

*★ Առաջիկայում ավելի բարձր զարգացման կհասնի ԳԴՌ-ն։ Յոթնամյակի ընթացքում (1964—1970), 1963 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի թողարկումը կավելանա 60 տոկոսով։ Դա ավելի քան 6 անգամ կգերազանցի 1949 թվականի մակարդակը։*

*★ Յոթնամյակի ընթացքում նախատեսված է արդյունաբերության*



*մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 65 տոկոսով։*

*★ ԳԴՌ-ն բնակչության յուրաքանչյուր շնչին հասնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ առաջ է անցել Արևմտյան Գերմանիայից և Եվրոպայում գրավում է երկրորդ տեղը (առաջին տեղը պատկանում է Անգլիային)։*

*★ Այժմ ԳԴՌ-ում բնակչության յուրաքանչյուր շնչի համար արտադրվում է 2.671 կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ ԳՖՌ-ում՝ 2.260 կիլովատ-ժամ։*

*★ Միայն 1963 թվականին ԳԴՌ-ն արտադրեց 5,4 միլիարդ կիլովատ ժամով ավելի էլեկտրաէներգիա, քան արտադրել էր ամբողջ Գերմանիան 1936 թվականին։*

*★ ԳԴՌ-ի արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ քիմիական արդյունաբերության բաժինը կազմում է 16 տոկոս։ Ուրիշ ոչ մի այլ երկրում քիմիական արդյունաբերությունը չունի այդպիսի տեսակարար կշիռ։*

*★ Բնակչության մեկ շնչի համար արտադրվող քիմիական արտադրանքի չափով ԳԴՌ-ն այժմ աշխարհում գրավում է երկրորդ տեղը, ետ մնալով միայն ԱՄՆ-ից։*

*★ Արդեն 1962 թվականին ԳԴՌ-ի արդյունաբերական արտադրանքը, 1936 թվականի մակարդակի համեմատությամբ,կազմում էր 360 տոկոս։*

*★ «Բարեկամություն» նավթամուղի շահագործումից հետո ԳԴՌ-ն ստացավ հումքի հզոր աղբյուր։ Այդ բազայի վրա Շվեդտում, Լյուտցկենդորֆում և այլուր կառուցվում են քիմիական արդյունաբերության նոր ճյուղի՝ նավթաքիմիայի խոշոր ձեռնարկություններ։*

*★ Միայն անցյալ տարի ԳԴՌ-ի գյուղատնտեսությունը ստացավ 13.800 տրակտոր և մի քանի տասնյակ հազար գյուղատնտեսական մեքենաներ։ Այժմ ԳԴՌ-ում կա 120 հազարից ավելի տրակտոր։*

*★ Մեծ ուշադրություն է դարձվում գյուղատնտեսության զարգացմանը։ Յոթնամյակի վերջում 1970 թվականին յուրաքանչյուր մեկ հեկտարի դիմաց արտադրվելու է միս՝ 202 կգ, կաթ՝ 985 կգ, ձու՝ 440 հատ։ Յոթնամյակի վերջում հացահատիկային կուլտուրաների բերքը կավելանա 19 տոկոսով, կարտոֆիլինը՝ 32 տոկոսով։*

*★ Գյուղատնտեսության անշեղ աճը ապահովելու նպատակով ԳԴՌ-ում մինչև յոթնամյակի վերջը կարտադրվեն 108 հազար նոր տրակտոր և 25 հազար նոր բեռնատար ավտոմեքենաներ։*

*★ ԳԴՌ-ի արտաքին առևտրի երեք քառորդը կատարվում է սոցիալիստական երկրների հետ։*

*★ ԳԴՌ-ի աշխատավորների բոլոր հաջողությունների գրավականը հանդիսանում է ՍՍՌՄ-ի հետ անխորտակելի դաշինքը և անխախտ բարեկամությունը։ Վերջին 12 տարիներին ԳԴՌ-ն ՍՍՌՄ-ից*

*ստացել է մոտ 4.000 տեխնիկական փաստաթուղթ, իսկ մեր երկիրը ԳԴՌ-ից ստացել է 2.060 տեխնիկական փաստաթուղթ։*

★ *ՍՍՌՄ-ի և ԳԴՌ-ի միջև առևտրի ծավալը 1950—1963 թթ. աճել է ավելի քան յոթ անգամ։ Այն գերազանցում է ԱՄՆ-ի և ԳՖՌ-ի ապրանքաշրջանառությանը։*

★ *ՍՍՌՄ-ի և ԳԴՌ-ի միջև 1963 թվականին կնքվել է առևտրական պայմանագիր՝ 10 միլիարդ մարկի ծավալով։*

★ *ԳԴՌ-ի արտահանության 60 տոկոսը կազմում է մեքենաշինական արտադրանքը։ Սովետական Միությունից հետո ԳԴՌ-ն մեքենաների արտահանության գծով երկրորդ խոշոր սոցիալիստական երկիրն է։*

★ *ԳԴՌ-ի անշահախնդիր օգնության շնորհիվ աշխարհի տարբեր երկրներում կառուցվել են հարյուրից ավելի ձեռնարկություններ, այդ թվում ցեմենտի գործարաններ, տեքստիլ կոմբինատներ, շաքարի գործարաններ և էլեկտրակայաններ։*

★ *1958 թվականից մինչև 1964 թվականը ԳԴՌ-ում կառուցվել է 700 հազար բնակարան։ Սկսած 1958 թվականից միջին հաշվով յուրաքանչյուր վեցերորդ րոպեյում ԳԴՌ-ում կառուցվում է նոր բնակարան։*

★ *Բնակչության կուլտուրական կարիքների վրա, առողջապահության և սոցիալական նպատակների համար կատարվող ծախսերը պետական բյուջեով ավելացել են 20 միլիարդ մարկով։ Այդ նպատակով ԳԴՌ-ում պետական բյուջեով երկու անգամ ավելի շատ միջոցներ են ծախսվում, քան Արևմտյան Գերմանիայում։*

★ *1963 թվականի վերջերին ԳԴՌ-ում յուրաքանչյուր 100 ընտանիքին բաժին էր ընկնում 38 հեռուստացույց, 44 կարի մեքենա, 16 սառնարան, 18 էլեկտրական լվացքի մեքենա։*

★ *Չնայած արևմտագերմանական իմպերիալիստների մտադրություններին, անշեղորեն բարձրանում է ԳԴՌ-ի քաղաքացիների կենսամակարդակը։ Միայն վերջին 5 տարիներին աշխատավորների եկամուտներն ավելացել են միջին հաշվով 20 տոկոսով։*

★ *ԳԴՌ-ում սոցիալիստական. շինարարության խոշորագույն նվաճումներից է հանդիսանում տասնամյա հանրակրթական պոլիտեխնիկական միջնակարգ դպրոցների ստեղծումը։*

★ *ԳԴՌ-ի շուրջ մեկ միլիոն աշխատավորներ առանց արտադրությունից կտրվելու սովորում են 223 երեկոյան համալսարաններում, 1 250 արտադրական և 3000 գյուղական ակադեմիաներում։*

Նշելով իրենց ազգային վերածննդի տոնը՝ ԳԴՌ-ի աշխատավորները ավելի սերտորեն են համախմբվում բանվորա-գյուղացիական իշխանության շուրջը, ավելի եռանդով են կենսագործում սոցիալիզմի ծավալուն կառուցման ճոյակապ ծրագիրը, որն ընդունվեց 1963 թվականին Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիայի 6-րդ համագումարում։



# «ԴՐԱԽՏԸ» ԱՄԵՐԻԿՅԱՆ ՁԵՎՈՎ

*Փորձելով դուրս պրծնել անլուծելի հակասությունների ճահճից, ամերիկյան մոնոպոլիաները նոր հարձակում են սկսել բանվոր դասակարգի վրա, աշխատավոր մասսաների վրա։ Մեր օրերում իմպերիալիզմի գիշատիչ բնույթը երևան է գալիս հատկապես շահագործման ուժեղացման, աշխատավորների և նրանց ընտանիքների անձնական պահանջմունքների կրճատման, աղքատության ու գործազրկության մեջ։ Պրեզիդենտ Ջոնսոնը 1964 թվականի հունվարի 8-ին կոնգրեսին հղած իր ուղերձում ստիպված էր հայտարարել. «ԱՄՆ-ում աղքատությունը ազգային պրոբլեմ է»։*

*Պրեզիդենտը հայտարարեց «պատերազմ ընդդեմ աղքատության»։ Ինչպես հայտնի է, նման «պահանջով» հանդես են եկել նաև նրա շատ նախորդները։ Բայց, ինչպես ասում են՝ բեռը հիմա էլ իր տեղում է։ Դրա պերճախոս հաստատումն են այն փաստերը, որոնք վկայակոչում է թղթակից Բեգդիկյենը «Ամերիկյան աղքատության հոգի մորմոքացնող պատկերը» հոդվածում, որ տպագրվել է «Սարդեյ իվնինգ պոստ» ամսագրում։*

*Շրջագայելով համարյա ամբողջ երկրում, այդ ժուռնալիստը, ինչպես ինքն է ասում, սեփական աչքերով պրպտել է «այն աշխարհը, ուր մնում են հասարակ մարդկանց հույսերը»։ «Ծայրահեղ դեպքում 36 միլիոն ամերիկացիներ ընչազուրկ են,— գրում է Բեգդիկյենը։ Իսկ եթե ելնենք ավելի ճշգրիտ տվյալներից, ապա և ամբողջ 54 միլիոն... Մենք ամենահարուստ երկիրն ենք երկրագնդի վրա, բայց այդուհանդերձ ամերիկացիների հինգից մեկը չի կարողանում կուշտ ուտել, ունենալ հուսալի ապաստարան, օգտվել բժշկական օգնությունից...»։*

*1962 թվականին զորահավաքից առաջ անցկացված ստուգումներին մասնակցող 306 հազար երիտասարդ ամերիկացիներից 150 հազար մարդ պիտանի չեն ճանաչվել,— ասվում է այս տարվա ԱՄՆ-ի աշխատանքի մինիստրի զեկուցագրում։*

Վաշինգտոնից ստացված հաղորդումների համաձայն, պրեզիդենտը խիստ անհանգստացած էր այն փաստերով, որոնք իր զեկուցման մեջ վկայակոչել էր աշխատանքի մինիստրը։ «Այն բանի գլխավոր պատճառը, թե ինչու այդ երիտասարդները չեն համապատասխանում տվյալ պահանջներին՝ ֆիզիկական և մտավոր զարգացման առումով,— դա աղքատությունն է»,— հայտարարեց Ջոնսոնը։

«Քաղցից տառապում ենք», «Մի թողնեք, որ մեր երեխաները քաղցից մեռնեն»,— այսպիսի պլակատներով էին անցնում հունվարին Չիկագոյի փողոցներով ավելի քան երեք հարյուր կանայք ու երեխաներ։ «Սովյալների արշավ»-ի մասնակիցներն ուղևորվեցին դեպի նպաստները տնօրինող վարչության շենքը, որպեսզի իրենց բողոքն հայտնեն ընդդեմ անգործներին ցույց տրվող օգնության կրճատման։ Նրանք ուղղակի վարչության շենքում նստացույց կազմակերպեցին և հայտարարեցին, որ չեն հեռանա այնքան ժամանակ, քանի դեռ չեն հասել իրենց պահանջների բավարարմանը։ Բողոքի ցույցին ավելի շատ մարդիկ կմասնակցեին, հայտարարեց արշավի ղեկավարը, եթե նրանք կոշիկներ ունենային։

Գործազրկությունը շարունակում է մշտապես սպառնալ Ամերիկայի աշխատավորներին։ 1961 թվականին միայն լրիվ գործազուրկների թիվը կազմում էր (ամենևին ոչ լրիվ տվյալներով) համարյա 6 միլիոն մարդ։ Իսկ 1962 թվականին գործազուրկների բանակը վերաճեց 14 միլիոնի։ Մինչև 25 տարեկան ամերիկացիների մեկ երրորդը գտնվում էր «ավելորդ մարդկանց» վիճակում։

1963 թվականին վիճակը չբարելավվեց։ Միայն ցուցակագրման ենթարկված գործազուրկների թիվը (որ աշնանը կազմում էր 4 միլիոն), նոյեմբերին աճեց ևս 500 հազար մարդով։ «Գործազրկության պրոբլեմը աճում ու սրվում է»,— խոստովանեց ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջոնսոնը։

Առանձնապես ծանր պայմաններում է գտնվում ԱՄՆ-ի նեգր ազգաբնակչությունը։ Նեգրերը հալածանքի են ենթարկվում տառացիորեն երկրի բոլոր նահանգներում։ Ինչպես վերջերս հայտնում էր «Լուկ» ամսագիրը, հարավը հյուսիսից անջատող Մեսոն-Դիկսոն գծից այն կողմ «գունավորների համար» ազդանիշեր



չկան, բայց խտրականության անտեսանելի շղթափակները շրջապատում էին նեգրին առավոտից մինչև ուշ գիշեր։ Արդեն ավելի քան կես դար է, ինչ հարավում դաժանորեն հալածված նեգրը փախչում է դեպի հյուսիս, ջանալով մի կերպ ճանապարհ հարթել անցյալի փշալարերի միջից։ Բայց հյուսիսը ականապատված մի դաշտ է, որի վրայով շարժվող սև մարդը պետք է յուրաքանչյուր քայլը անի այնպիսի զգուշությամբ, ինչին միայն նա է ընդունակ։

Արգելապատնեշները, որոնց բախվում են նեգրերը հարավում, ոչ սակավ դժվար հաղթահարելի են։ Հյուսիսային քաղաքներում գոյություն ունեն օրենքներ, որոնք արգելում են ռասայական խտրականությունը՝ աշխատանքի վարձելիս։ Սակայն հատուկ հետազոտությունները ցույց են տվել, որ վեց խոշոր քաղաքներում գործակալությունների 90 տոկոսը բավարարում են միայն սպիտակների պահանջները։

ԱՄՆ-ի միլիոնավոր չափահաս քաղաքացիներ հիմա գրել ու կարդալ չգիտեն։ Եվ դա ատոմի, կիբեռնետիկայի, տիեզերքի նվաճման դարում։ Պաշտոնական տվյալներով ԱՄՆ-ում բնակչության 2,2 տոկոսը անգրագետ է։ Ինչպես հաղորդում է առաջադեմ մամուլը, 11 միլիոն մարդ չեն կարող նույնիսկ նամակ գրել։ Երկրում պակասում է 121 հազար դասասենյակ։

ԱՄՆ-ի հանգուցյալ պրեզիդենտ Քենեդին լուսավորության հարցերով կոնգրեսին հղած իր ուղերձում գրել է. «Մեր երիտասարդության գրեթե 40 տոկոսը հեռանում է միջնակարգ դպրոցից, առանց ավարտելու այն... Մեր խոշոր քաղաքների ընչազուրկ շրջաններում, խիտ բնակեցված արվարձաններում, որոնցից մի քանիսը իրենցից ներկայացնում են հետնախորշեր, դպրոցը ավարտելուց առաջ այն լքած պատանիների ու աղջիկների թիվը հասնում է 70—75 տոկոսի։ Մեր դեմ հառնում է բավական լուրջ համազգային վտանգ»։

Ներկա ուսումնական տարվա սկիզբը ԱՄՆ-ում նշանավորվեց նոր ռասայական սանձարձակությամբ, որն ուղղված էր նեգրերի ու սպիտակների համատեղ ուսուցման դեմ։ Պետք է նշել, որ խտրականությունը պաշտոնականորեն արգելված է գերագույն դատարանի հրահանգով։ Իսկ իրակա՞նում։ Մի քանի նահանգներում չկա ոչ մի դասարան, որտեղ միասին սովորեին

սպիտակների ու նեգրերի երեխաները։ Հարավային 17 նահանգների 6.368 դպրոցական շրջաններից միայն 912-ն են ենթարկվել խտրականությունն արգելելու որոշմանը։

Մեկ աշակերտի հաշվով ծախսը նեգրական դպրոցներում 10—12 անգամ ցածր է, քան սպիտակների համար նախատեսված դպրոցներում։ Զարմանալի չէ, որ յուրաքանչյուր հինգ աշակերտներից երեքը լքում են դպրոցը՝ առանց գրել կարդալ սովորելու։

Բնակարանային ծանր կարիքը թունավորում է միլիոնավոր ամերիկացիների կյանքը։ Միացյալ Նահանգներում ամբողջ բնակչության մեկ հինգերորդը, նեգրական բնակչության երեք քառորդից ավելին, բնակվում է այնպիսի տներում, որոնք չեն համապատասխանում ոչ մի սանիտարական նորմայի։ Գրեթե յուրաքանչյուր 2-րդ բնակելի շենք կարիք է զգում միջին կամ հիմնական վերանորոգման, կամ էլ հարկավոր է բոլորովին քանդել։

Այդ պատճառով էլ ԱՄՆ-ի բնակչությունը ստիպված է բնակարանի համար շատ թանկ վճարել։ Ամերիկացիների կեսի համար ամսական բնակվարձը կազմում է 80—100 դոլար այն դեպքում, երբ շատ բանվորների աշխատավարձը հասնում է միջին հաշվով 250 դոլարի։

Այս տարվա հունվարին բռնկվեց վարձու բնակարաններում ապրողների գործադուլը։ Նյու-Յորքի նեգրական թաղամասի 167 տների մոտավորապես 3 հազար կենվորներ հրաժարվեցին վճարել հետնախորշերի համար, որոնցում բնակվում են, մինչև տնատերերը անհրաժեշտ նորոգում չիրագործեն։ Մինչև հիմա վարձակալներին չի հաջողվել գործադուլների օգնությամբ հասնել բնակարանային պայմանների բարելավմանը։

Ճիշտ է, կա մի ասպարեզ, որտեղ ամերիկյան կապիտալիզմը նորանոր ռեկորդներ է սահմանում, դա հանցագործությունների ասպարեզն է։ Միայն 1961 թվականին ԱՄՆ-ում կատարվել է 2.145.150 քրեական հանցագործություն, նույն թվականին 14 հազար մարդ ինքնասպանություն է գործել, 700 հազարը՝ խելագարվել է, ավելի քան 100 հազար մարդ զոհվել է զանազան վթարներից ու դժբախտ պատահարներից։



«Երկրային դրախտում», ինչպես անվանում են ԱՄՆ-ի բուրժուական պրոպագանդիստները, տիրող վայրենի բարքերի պարզ պատկերացումը տալիս է Ջերոմ Էլլիսոնի հոդվածը, որը տպագրվել է «Նեյշն» ամսագրի դեկտեմբերյան համարում։ Թվերը ձեռքին նա ցույց տվեց, թե ինչ է իրենից ներկայացնում «կյանքի ամերիկյան ձևը» առանց գունազարդումների։ «Մենք տարեկան կատարում ենք ավելի քան 8600 սպանություն։ Դա երեքուկես անգամ ավելի է, քան Կանադայում, երկու անգամ ավելի, քան Անգլիայում, Ֆրանսիայում, Ճապոնիայում, 7 անգամ ավելի՝ քան Բելգիայում, 9 անգամ ավելի՝ քան արևելյան չարաբաստիկ քաղաք Հոնկոնգում»։

Պատահական չէ, որ նշանառության հարմարանքով հրացանը, որով, ինչպես ենթադրում են, կատարվեց պրեզիդենտ Քեննեդիի սպանությունը, այժմ արագորեն գնում են ԱՄՆ-ում։ Նրա գինը կայծակնային արագությամբ 15-ից բարձրացավ մինչև 100 և ավելի դոլար։ Այդպիսի հրացան արդեն շատ խանութներում հնարավոր չէ գտնել։ Այդ մասին հաղորդելով իր ընթերցողներին, «Քվիկ» ամսագիրը կարևոր եզրակացություն է անում. ժամանակակից Ամերիկայում նպաստավոր պայմաններ են ստեղծված հանցագործ տարրերի համար։

Երկրի ամբողջ հարստությունն իրենց ձեռքը վերցրած մոնոպոլիաների իշխանությունն ավելի ու ավելի զորեղ է հանդես գալիս ժողովրդի շահերը ոտնահարելու մեջ։ Ահա թե ինչպես են ծախսվում ամերիկյան հարկատուներից գանձված միջոցները։ 1961—1962 ֆինանսական տարում բյուջեի մեջ մտնող յուրաքանչյուր դոլարից ԱՄՆ-ի կառավարությունը 68 ցենտ հատկացրել է ռազմական նպատակներին, 7 ցենտ՝ հարուստ հողատերերին ֆինանսավորելու համար, և միայն 5 ցենտը՝ կոմունալ կարիքների, առողջապահության, լուսավորության և սոցիալական ապահովության համար։

Բուրժուական շահագործողական հասարակարգը մեծագույն պատնեշ է դարձել հասարակական առաջընթացի ճանապարհին և այդ պատճառով էլ դատապարտված է պատմության կողմից ու անողորմ գնում է դեպի իր կործանումը։

Պ. ԵՐԵՄԵՆԿՈ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Սոցիալիստական երկրների ժողովուրդների անխախտ բարեկամությունը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ բարեկամության ու եղբայրության միտինգում 1964 թ. օգոստոսի 27-ին Պրագայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 28-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ 1964 թ. սեպտեմբերի 4-ին սովետա-չեխոսլովակյան հայտարարությունը ստորագրելիս, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 5-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ելույթ Մոսկվայի ռադիոյով և հեռուստատեսությամբ, 1964 թ. սեպտեմբերի 7-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 8-ի համարում։*

*Ա. ՆՈՎՈՏՆԻ*— Ճառ 1964 թ. սեպտեմբերի 4-ին սովետա-չեխոսլովակյան հայտարարությունը ստորագրելիս, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 5-ի համարում։*

## 2. Չինական պառակտիչների մեծապետական, նացիոնալիստական ձգտումները խորթ են ինտերնացիոնալիզմին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ 1964 թ. սեպտեմբերի 4-ին սովետա-չեխոսլովակյան հայտարարությունը ստորագրելիս, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 5-ի համարում։*

Մաո Ցզե-դունի զրույցը ճապոնացի սոցիալիստների հետ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 5-ի համարում։*

Ճապոնական սոցիալիստների խմբի հետ Մաո Ցզե-դունի զրույցի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 5-ի համարում։*

## 3. Աշխատանքային նոր հաջողություններով դիմավորենք մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ Կիրգիզիայի կոմպարտիայի Կենտկոմի և Կիրգիզական ՍՍՌ Գերագույն սովետի հանդիսավոր նիստում, 1964 թ. օգոստոսի 16-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 18-ի համարում։*



*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Նամակ երիտասարդ մեխանիզատոր-բամբակագործների համամիութենական խորհրդակցության մասնակիցներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 21-ի համարում։*

Արժանավայել դիմավորենք մեծ Հոկտեմբերի 47-րդ տարեդարձը, Անդրկովկասի երկաթուղու Երևանի բաժանմունքի կոլեկտիվի դիմումը երկաթուղու Ադրբեջանի, Թբիլիսիի և Սամտրեդիայի բաժանմունքների կոլեկտիվներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 8-ի համարում։*

## 4. Պատվով ավարտենք բերքահավաքի աշխատանքները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արագացնել բերքահավաքի և հացամթերումների տեմպը, *«Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 9-ի առաջնորդողը։*

Բերքահավաքի և հացամթերումների ստուգման տասնօրյակ, *նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 19-ից սեպտեմբերի 3-ի համարներում։*

Արտադրական առաջավոր տեղամասը, *հոդված, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 1964 թ. 8-րդ համարում։*

## 5. Արտադրության մեջ նորի, առաջավորի արմատավորման համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ինտենսիվացման ուղիով, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 8-ի համարում։*

*Ս. ԹՈՒՄԱՆՅԱՆ*— Այդ պահանջում են ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները, *հոդված, տպագրված «Հայաստանի արդյունաբերություն» ամսագրի 1964 թ. 6-րդ համարում։*

*Ա. ԹՈՒՄԱՍՅԱՆ*— Ընդլայնել ժողովրդական սպառման ապրանքների որակի բարձրացման խթանող գործոնները, *հոդված, տպագրված «Հայաստանի արդյունաբերություն» ամսագրի 1964 թ. 7-րդ համարում։*

## 6. Լայն ճանապարհ ռացիոնալիզատորությանն ու գյուտարարությանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ամենօրյա կարևոր գործ, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. սեպտեմբերի 4-ի համարում։*

*Ծ. ԲԱՏԻՐՅՈՎԱ*— Նորարարները կատարելագործում են արտադրության տեխնոլոգիան, *հոդված, տպագրված «Հայաստանի արդյունաբերություն» ամսագրի 1964 թ. 7-րդ համարում։*

Ռացիոնալիզատորական առաջարկությունները արմատավորվում են արտադրության մեջ, *հոդված, տպագրված «Հայաստանի արդյունաբերություն» ամսագրի 1964 թ. 6-րդ համարում։*

# ԷԼՄԱՅԻ ԿՐԱԿՆԵՐԸ

Շատ վաղ ժամանակներից մարդիկ ականատես են եղել սրածայր մարմինների վրա վառ կապտավուն բոց ունեցող կրակների առաջացմանը։ Կրակն ունենում է 20—50 սմ, նույնիսկ մեկ մետր բարձրություն և 10—20 սմ լայնություն։ Բոցի սուր ծայրը կանթեղի, կամ ճրագի նման ուղղված է լինում վերև և ուղեկցվում է ճարճատյունով։ Բոցը տևում է 30 րոպեից մեկ ժամ, և անհետանալն ու երևալը կատարվում է անսպասելիորեն։

Դարերի ընթացքում այս կրակների վերաբերյալ տարբեր ժողովուրդների մոտ ստեղծվել են տարբեր ավանդություններ։ 17-րդ դարի ծովագնացներից մեկը պատմում է, որ Բալեարյան կղզիների մոտ փոթորկի ժամանակ նավի տարբեր մասերում անսպասելիորեն երևացել ու անհայտացել են «սուրբ կրակները», որոնք ունեին 60 սմ-ից ավելի երկարություն։

Սովետական ալպինիստները Տյան-Շանի լեռնագագաթներից մեկը բարձրանալու ժամանակ, ամպրոպի պայթյունից հետո նկատում են, որ իրենց մազերն «այրվում» են վառ կապտավուն լույսով։ Նրանց գլուխները կարծես թե շրջապատված լինեին վառ փայլով։ Երբ ալպինիստներից մեկը գլխարկը հանեց, նրա փայլող մազերը բիզ-բիզ կանգնեցին, արձակելով փոքրիկ երկնագույն կայծեր և ֆշշոց։

Հայաստանում էլմայի կրակներն ինչպես հնում, այնպես էլ այժմ շատ են նկատվում Արագածի վրա։ Ըստ հայկական ավանդության, երբ Գրիգոր Լուսավորիչը գնում էր Արագած լեռը «Նարեկ քաղելու», այսինքն աղոթելու, մի անպարան կանթեղ նրան լույս էր տալիս։ Հ. Թումանյանը ժամանակին մշակել է այդ ավանդությունը, գրելով «Լուսավորչի կանթեղը» հայտնի լեգենդը։ Ավանդությունն օգտագործել է նաև Պ. Պռոշյանը իր «Սոս և Վարդիթեր» վեպում։ Մ. Նալբանդյանը իր «Կրիտիկա «Սոս և Վարդիթեր»» աշխատությունում տալիս է դրա ճշմարտացի գիտական բացատրությունը։

Էլմայի կրակներ տարբեր ժամանակներում նկատվել են շատ վայրերում։ Այդ անվանումը առաջ է եկել միջին դարերում Իտալիայի սուրբ Էլմա եկեղեցու գմբեթի խաչի ծայրին կրակի հաճախակի երևալու հետևանքով։

Էլմայի կրակների առաջացումը գիտականորեն բացատրվում է հետևյալ կերպ՝ կայծակից առաջ կամ հետո ամպրոպային, ինչպես նաև մրրկաբեր ամպերի կենտրոնական մասն ունենում է դրական լիցք, կենտրոնից դուրս գտնվող մասը՝ բացասական։ Եվ ահա, մթնոլորտի ներքին շերտում առաջացող մեծ լարվածության դեպքում բարձր կետերից դուրս են թռչում էլեկտրական կայծեր։ Այս կրակների առաջացումը պատկանում է բնության արտասովոր երևույթների շարքին։

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԱՐՇԱՎԻՐ ԽԱՉԱՏՐՅԱՆ, Կրակների միջով, 402 էջ, տպաքանակ 10.000, գինը 63 կոպ.։

Սույն գրքի բովանդակությունը մեր ժողովրդի պատմության ոչ հեռավոր անցյալի՝ 1905—1920 թվականների հերոսական դրվագներն են։ Գրքում ցույց է տրված, թե ինչպես հայ ժողովուրդը, իր վերջնական ազատագրումը սպասելով ռուս մեծ ժողովրդից, իրեն հասած ամենածանր աղետի օրերին անգամ, անցնելով կրակների միջով, արհամարհելով հակառակորդի գերազանց ուժերը, թե՛ Բաղրևանդում, թե՛ Սասունում և թե՛ Սարդարապատի հերոսամարտում զենքը ձեռքին պայքարի է ելել թուրք ջարդարարների դեմ և օրհասական կռվից դուրս եկել հաղթանակով։

ԳԵՈՐԳ-ՎԻԼՀԵԼՄ-ՖՐԻԴՐԻԽ ՀԵԳԵԼ, Փիլիսոփայության ներածություն, փիլիսոփայական պրոպեդևտիկա, թարգմանությունը՝ Տաճատ Ալեքսանյանի, 290 էջ, տպաքանակ 5.000, գինը 42 կոպ.։

Քանի որ արդեն հայերեն են թարգմանվել ու հրատարակվել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների շատ աշխատություններ, որոնցով հայ ընթերցողը հաղորդակից է դարձել մարդկային մտքի զարգացման սկզբնաղբյուրներին, ուստի և գերմանական կլասիկ փիլիսոփայության գագաթ Ֆ. Հեգելի երկերից «Փիլիսոփայության ներածության» թարգմանությամբ ժամանակին է սկիզբ դրվում մարքսիզմի աղբյուրների՝ անգլիական կլասիկ քաղաքատնտեսության, ֆրանսիական ուտոպիական սոցիալիզմի և գերմանական կլասիկ փիլիսոփայության ականավոր ներկայացուցիչների ընտիր աշխատությունների թարգմանության։

«Փիլիսոփայության ներածությունը» 1809—1811 թթ. Նյուրնբերգի գիմնազիայի աշակերտների համար Հեգելի կարդացած դասախոսություններն են։ Դրանց մեջ, հնարավորության սահմաններում, հանրամատչելի ձևով, նա շարադրել է իր ամբողջ սիստեմը, որի առանձին մասերը հետագայում ավելի մանրամասն քննել է առանձին երկերում։ Աշխատությունը հնարավորություն է ընձեռում ամբողջական ու ամփոփ պատկերացում կազմելու Հեգելի փիլիսոփայության մասին և հեշտացնում է նրա առանձին երկերի հետագա ուսումնասիրումը։

«Փիլիսոփայության ներածությունն» ուղեկցվում է Հեգելի դիալեկտիկայի և, ընդհանրապես, նրա փիլիսոփայության մարքսյան քննադատությամբ, ինչպես նաև հեգելյան մեթոդի էնգելսյան գնահատականով, որոնք Հեգելի աշխատությունն ուսումնասիրողին կօգնի կողմնորոշվելու նրա վերացական շարադրանքի մեջ, Վ. Ի. Լենինի արտահայտությամբ՝ մատերիալիստորեն ընթերցելու այն։

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ

ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 18

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 08462* *Պատվեր 801* *Տիրաժ 8977*

*Հանձնված է արտադրության 8/IX 1964 թ.:*
*Ստորագրված է տպագրության 18/IX 1964 թ.:*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,*

*Երևան, Կնունյանցի № 8:*

*Գինը 8 կոպ.:*